

# Նոր տարվա ճրագները

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Դեկտեմբերի 31-ի գիշերը, երբ փողոցները լուռ էին ու ամայի, երբ հանդարտ ձյուն էր գալիս ու ծածկում ամենուրեք, քաղաքի մուտքի մոտ երևաց կանոնավոր շարք կազմած մարդկանց մի խումբ: Նրանք քայլում էին ուղիղ ու ձիգ, իսկական զինվորի պես: Հագել էին գույնզգույն, գեղեցիկ ու հեքիաթային շորեր: Շորերի կոճակները փայլում էին և պայծառ լույս արձակում: Առջևից գնացողները քայլերգ էին նվագում, նվագում էին իրենց հիմնը:

Ոչ ոք չիմացավ նրանց մասին: Ոչ ոք նրանց չտեսավ: Ոչ ոք չլսեց նրանց նվագը:

Նրանք թվով 67 էին: Վաթսունյոթ մորուքավորներ: Իսկ շարքի սկզբից քայլում էր տասը տարեկան մի տղա: Ուրեմն, նրանք ոչ թե 67 էին, այլ՝ 68:

Նրանք արդեն կատարել էին իրենց պարտականությունը և անցել հանգստի: Ծերացել էին: Ծերացել էին հենց մի տարվա ընթացքում, որովհետև նրանց գործը ծանր էր ու դժվար:

Եվ ահա նրանք հանդիսավոր կերպով բերում էին ամենանոր տարուն: Քաղաքի ծայրամասից պետք է ճամփու դնեին նրան,ապա բաժանվեին ու վերադառնային:

Շարքը կանգ առավ:

— Քիչ հետո կմտնես քաղաք,—ասաց ամենաավագն ու ամենափորձվածը, 1901 թվականի Նոր տարին:

— Ինձ մենակ մի՛ թողեք,— խնդրեց տղան,— ես չգիտեմ ինչ պետք է անել:

— Կսովորես,— հանգստացրեց նրան 1901 թվականը:— Իսկ ի՞նչ կասեիր, եթե իմ տեղը լինեիր: Ես, ախր, բոլորովին մենակ էի: Ինձ ոչ ոք չէր ուղեկցում: Հին դարն արդեն իր գործը արել, վերջացրել էր...

Նրանք լռեցին, որովհետև հեռվից վազելով ինչ-որ մեկն էր գալիս: Նա այնքան էր շտապում, որ հաճախ սայթաքում էր, բայց հետո նորից ոտքի ելնում ու, առանց դադարի, նորից վազում:

Վերջապես շնչակտուր տեղ հասավ:

— Ո՞վ ես դու,—զարմացած հարցրեց տղան:

— Ես 68 տարեկանն եմ,— հևիհև պատասխանեց անծանոթը:— Հազիվ հասա, քիչ էր մնում ուշանայի:

— Ինչպե՞ս ես փոխվել,— ասացին նրան,— ինչպե՞ս ես մեծացել:

— Դե, քեզ հաջողություն,— ասաց 1901 թվականը և համբուրեց տղայի ճակատը:

Նվագախումբը դարձյալ նվագեց հիմնը, իսկ շարքը շրջվեց ու սկսեց հեռանալ: Բավական հեռանալուց հետո մի պահ կանգ առան, ձեռքով արեցին տղային ապա անհետացան մթության մեջ:

Տղան մնաց մենակ: Ցուրտ էր: Չորս կողմը՝ ձյուն: Շրջակա տների բոլոր լույսերը վառվում էին: Եվ ամեն տեղից աղմուկ էր լսվում: Բոլորն էլ սպասում էին Նոր տարուն, առանց իմանալու, որ նա եկել է արդեն և ահա, ուր որ է, կմտնի քաղաք:

Տղան մի քայլ արեց, անցավ քաղաքի սահմանը, և բոլոր ժամացույցները խփեցին տասներկուսը: Տներում ուրախ ձայներ հնչեցին, բաժակները խփվեցին իրար, մարդիկ երգեցին ու պարեցին:

Տղան նայում էր պատուհանների հետևից ու նախանձում նրանց: Նրանք ուրախանում էին իր պատճառով, իսկ ինքը երազում էր մի տաք անկյուն և մի քիչ ուտելիք:

Նա շարունակեց քայլել:

Փողոցում մի քանի մարդիկ էին կանգնել և ձնագնդի էին խաղում: Նրանք չնկատեցին տղային, թեև նա երկար կանգնեց ու նայեց նրանց:



Միայն ինչ-որ տան պատուհանից հանկարծ նա մի ցածր ձայն լսեց.

— Դու Նոր տարին չե՞ս:

Տղան շրջվեց և պատուհանի նեղ բացվածքի մեջ տեսավ մի փոքրիկ տղայի ու մի փոքրիկ աղջկա գլուխներ:

— Մենք քույր-եղբայր ենք,— շշուկով ասացին նրանք,— մենք ցածր ենք խոսում, որպեսզի հայրիկն ու մայրիկը չլսեն մեզ:

— Իսկ դուք որտեղի՞ց իմացաք, որ ես եմ Նոր տարին,— զարմացավ տղան:

— Մենք քեզ սպասում էինք: Մենք անմիջապես ճանաչեցինք քեզ:

— Ձեր անունն ի՞նչ է:

— Ես Սուրիկն եմ:

— Ես Համիկն եմ:

Հետո նրանք հարցրին.

— Իսկ քո՞ անունն ինչ է:

— 1969 թվական,— պատասխանեց տղան:

— Վա՜յ, ճիշտ է, ճիշտ է,— ծիծաղեցին երեխաները: Չե՞ս գա մեզ մոտ:

Տղան չսպասեց, որ երկար խնդրեն: Նա Սուրիկի ու Համիկի օգնությամբ ներս մտավ պատուհանից:

— Ինչ տա՜ք է ձեզ մոտ,— հաճույքով ձգվեց նա ու հորանջեց:— Այս ի՜նչ լավ տուն է...

Եվ քանի որ Սուրիկն ու Համիկը դուր էին եկել նրան, նա չամաչեց ու փսփսաց նրանց ականջին.

— Ուտելու բան չունե՞ք:

Չգիտես ինչու, նրանք ուրախացան, որ Նոր տարին քաղցած էր: Որ Նոր տարին մրսում էր: Որ Նոր տարու քունը տանում էր: Ուրեմն, նա նման էր իրենց, ոչնչով չէր տարբերվում, և նրա հետ կարելի էր ընկերություն անել:

Համիկը ոտքերի մատների վրա, զգուշությամբ դուրս եկավ սենյակից և քիչ անց ափսեն լիքը համեղ բաներ բերեց: Տղան սկսեց ախորժակով ուտել:

— Մեզ մոտ քնիր,— ասացին երեխաները:

— Չեմ կարող: Ես պետք է գնամ հրապարակ,

Իմ տեղը հրապարակի մեծ ժամացույցն է: Ես պետք է հետևեմ, որ նա ճիշտ աշխատի:

— Իսկ էլ չե՞ս գա մեզ մոտ:

— Ո՛չ, ես իրավունք չունեմ այնտեղից դուրս գալու:

— Ուրեմն, երբ հրապարակի ժամացույցը խփի, այդ դու՞ ես:

— Այո՛, ես եմ,— հպարտ ասաց տղան:— Քաղաքի բոլոր ժամացույցներն ինձ են ենթարկվում: Ես եմ ամենաճիշտ ժամացույցը:

Եվ կարծես որպես ապացույց, սեղանին դրված զարթուցիչը ուրախ զնգաց: Տղան ինչ-որ բան փսփսաց նրա ականջին:

— Ի՞նչ ասացիր, ի՞նչ ասացիր,— հետաքրքրվեցին երեխաները:

— Ասացի՝ բարև, ես եկել եմ,— պատասխանեց տղան:

Եվ այդ պահին կատարվեց մի չտեսնված, մի հոյակապ, մի անմոռանալի դեպք: Ինչքան որ ժամացույց կար հիմա այդ տանը, աննկատ քանդվեցին՝ հայրիկի, մայրիկի ու հյուրերի թևերից, իջան գետին ու եկան, շրջապատեցին տղային:

Սուրիկն ու Համիկը երջանկությունից թռչկոտում էին տեղում: Նրանք երկու խաղալիք ժամացույց ունեին: Այդ երկուսը ևս եկան, խառնվեցին մնացածներին: Եվ ա՜յ քեզ հրաշք: Խաղալիք ժամացույցները կենդանացան ու սկսեցին խփել՝ թիկ-թա՛կ, թիկ-թա՛կ... Հետո բոլոր թիկթակներն ուժեղացան: Դա նշանակում էր, որ ժամացույցները երգում էին: Հետո սլաքներն սկսեցին իրար հետ արագ-արագ պտտվել: Դա նշանակում էր, որ ժամացույցները պարում էին:

— Համիկը, Սուրիկը և 1969 թվականի Նոր տարին ևս, ձեռք-ձեռքի տված պարեցին ու երգեցին:

— Ափսո՜ս, որ էլ քեզ չենք տեսնելու,— տխրեցին երեխաները:— Ափսո՜ս, որ Նոր տարին միայն մի անգամ է գալիս:

— Ո՞վ ասաց,— չհասկացավ տղան:— Ես ամեն օր էլ այստեղ եմ: Մի ամբողջ տարի ձեզ հետ եմ: Պարզապես մարդիկ մոռանում են ինձ: Միշտ նայում են իրենց ժամացույցներին, բայց ինձ չեն տեսնում:

— Իսկապե՞ս,— բացականչեցին երեխաները: Ապա խոստացան նրան:— Մենք քեզ չենք մոռանա: Մենք միշտ ժամացույցին կնայենք ու կտեսնենք քեզ:

Զարթուցիչը մի անգամ ևս զրնգաց:

— Արդեն ժամանակն է, ես պետք է գնամ,— ասաց տղան:



Նրանք հրաժեշտ տվին իրար: Համիկը նույնիսկ լաց եղավ: Սուրիկն ու տղան ևս հուզվեցին և միմյանց ձեռք սեղմեցին: Տղան ցատկեց պատուհանից և ուրախ-զվարթ գնաց: Նա արդեն կուշտ էր, տաքացել էր և քունն այլևս չէր տանում: Նա կարող էր գործի անցնել: Նոր տարին այս անգամ հենց առաջին քայլին հանդիպել էր իր տարիքի երեխաների, որ սպասել էին իրեն ու ճանաչել, դիմավորել էին ոչ թե սեղանի շուրջ այլ դիմավորել էին հենց իրեն, անձամբ, մոտիկից... Եվ շնորհիվ նրանց, նա գլխի ընկավ իր անելիքը՝ հնարավորին չափ լավ բաներ բերել իր հետ...

Իսկ երեխաները մնացին մենակ: Ժամացույցները վերադարձան իրենց տեղերը, աննկատ մագլցեցին մարդկանց թևերի վրա, ոլորվեցին նրանց դաստակների շուրջը ու կապվեցին:

Խաղալիք ժամացույցները լռեցին: Մնաց միայն զարթուցիչը:

Սուրիկն ու Համիկը անկողին մտան: Երկար ժամանակ չէին կարողանում քնել: Անընդհատ նայում էին զարթուցիչին: Նրանք գիտեին, որ տղայի մի մասնիկն է այնտեղ:

— Մենք պետք է միշտ ժամացույցին նայենք,— ասաց Սուրիկը:

— Մենք պետք է լսենք նրան,— ասաց Համիկը:

— Մենք պետք է առավոտները ժամանակին զարթնենք:

— Ժամանակին դպրոց գնանք:

— Ժամանակին սովորենք մեր դասերը:

— Ժամանակին քնենք:

Եվ նրանք ուրախ էին, որ միայն իրենք գիտեն Նոր տարու գաղտնիքը: Այն, որ նա միշտ բաբախում է՝ իրենց հետ, իրենց կողքին, բոլոր ժամացույցների մեջ:

Քաղաքի հրապարակում խփեց ժամը մեկը:

1969 թվականը գործի էր անցել, խփել էր իր առաջին ժամը:

# ԾՈՒՅԼԸ ԵՎ ՏԱՆՁԸ

*ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ*

Հասած տանձը
Ծառի ճյուղից, թը՛մփ, ընկավ ցած,
Ուր պառկած էր ծույլի մեկը՝
Բերանը բաց։
Տանձը ընկավ
Նրա դիմաց։
Ծույլը տնքաց.
— Ա՛յ անիծված,
Հիմա ինչպե՞ս կոթդ բռնեմ,
Քիչ է մնում՝ սովից մեռնեմ։
Չէի՞ր կարող
Ծառից ընկնել բաց բերանս։
Վա՛խ, ի՛նչ ասեմ,
Դժվարացավ գործ ու բանս։—
Խոսեց այսպես
Եվ սպասեց՝ բերանը բաց։
Մեկ էլ ծառից
Մեկ ուրիշ տանձ, թը՛մփ՝ ընկավ ցած։
Ու տարածվեց
Հասած տանձի անուշ բույրը։
— Ա՛յ անիծյալ.—
Բախտից դժգոհ խոսեց ծույլը.—
Չէի՞ր կարող
Ծառից ընկնել բաց բերանս։
Վա՛խ, ինչ ասեմ,
Դժվարացավ գործ ու բանս։—
Մինչև հիմա
Պառկած է նա տանձենու տակ։
Սպասում է՝ բերանը բաց,
Աչքերը՝ փակ։
Հենց որ մոտը
Տանձ է թմփում,
Ծույլի սիրտն է
Արագ խփում.
— Վա՛յ, անտե՛ր ծառ,
Թող կայծակը ճյու՛ղդ խանձի։
Բա մինչև ե՞րբ
Կարոտ մնամ հասած տանձի...





Նկ. ԿԱՐԻՆ ՍԱՐԲԱՏՑԱՆԻ

# ՁՅՈՒՆ Է ԳԱԼԻՍ...

*ԶԱՐՄԱՆԴՈՒԽՏ*

Ձյուն է գալիս, ձյուն է գալիս՝
Ճերմա՛կ, ճերմա՛կ, արծաթե՛,
Մանուկները պար են գալիս
Թիթեռների պես թեթև։
Քարշ են տալիս սահնակները,
Թռվռալով իջնում բակ՝
Այնպես լա՛վ է խաղալ, սահել
Սահադաշտում լայնարձակ։
Ու սահում են մանուկները
Առավոտից իրիկուն,
Մինչդեռ փափուկ, փափուկ ձյունը
Շուրջը ճերմակ է ներկում։
Եվ այնպես է ուզում Լալան
Ձմռան օրը երկարի,
Որ նա ինքն էլ այդ թռվռան
Փաթիլների հետ պարի։
Բայց ձյունի հետ մութն է իջնում
Թևիկներով սև սաթե՝
Փոքրիկ Լալան քուն է մտնում
Երազներով արծաթե։



# Մի բան ասա, Շամունիկ

ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

— Մի բան ասա, Շամունի՛կ:

— Բազեն ուզում է ծիտ ուտել:

— Ապրե՛ս:

— Մի՛ ասա ապրես. ասա՝ խե՜ղճ ծիտիկ:

— Խե՜ղճ ծիտիկ:

— Հիմա դու՛ մի բան ասա:

— Ձմեռ է, ցուրտ, մրսում են գայլերը, սոված են գայլերը:

— Խե՜ղճ գայլեր, գայլերին միս տվեք, որ գառնուկներ չուտեն:

Ես ձևացնում եմ, թե միս եմ կտրտում ու կերակրում եմ գայլերին, իսկ նա նայում է ինձ և հարցնում.

— Ու՞մ միսն է:

— Գառնուկներինը:

— Խե՜ղճ գառնուկներ, գայլերին խո՛տ տվեք:

— Գայլերը խոտ չեն ուտում:

— Ես երազումս տեսել եմ, գայլերը խոտ էին ուտում:

— Խոտերի վրա մրջյուններ կան:

— Խե՜ղճ մրջյուններ, փրկե՛ք նրանց, նրանք մայրիկների մոտ են գնում:

Մենք երկուսով ձևացնում ենք, թե փրկում ենք մոլորված մրջյուններին, որ մայրիկների մոտ են գնում: Երևակայականը իրականին նմանեցնելու համար ես խոհանոցից կանաչի եմ բերում. ու մենք կանաչիների մեջ փնտրում ենք մրջյուններին:

— Մրջյուններ չկան:

— Չկան,— արձագանքում եմ ես:

— Գնացին մայրիկների մոտ:

— Գնացին:



## ԶԱՐՄԱՆԱԼԻ ՁՆԵՄԱՐԴԸ

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Ծեկ Մինասը երբ արթնացավ,
Նայեց բակը՝ ուրախացավ:
Ամբողջ գիշեր ձյուն էր եկել,
Ծառ ու ծաղիկ ճերմակ ներկել:
Արագ-արագ շորերն հագավ,
Ծտի նման, թը՜ռ, դուրս եկավ:
Ու ձայն տվեց.—Կարե՜ն, Մաղա՜ք.
Դու՛րս եկեք, դու՜րս. մի կուշտ խաղանք:—
Ու չանցած մի քանի վայրկյան,
Տղաները իսկույն եկան:
Ծեկ Մինասը ասաց զվարթ.
— Եկեք սարքենք մենք ձնեմարդ:—
Փոքրիկները ուրախացան,
Գործի անցան:
Ամեն մեկը մի ձնագունդ
Առավ բերեց,

— Երբ մրջյունը բարձրանում է մայրիկի գիրկը, ինչու՞ մայրիկի ոտքերը խուտուտ չի տալիս։

— Ինչու՞ պետք է խուտուտ տա։

— Իսկ ինչու՞ գյուղում իմ ոտքերը խուտուտ էին տալիս։

— Ուզում էին, որ ծիծաղես։

— Հա՛, հա՛, հա՛,— Շամունիկը ծիծաղում է, գլուխը ետ է գցում, նորից է ծիծաղում։ Գլուխը այնքան է ետ գցում, որ քիչ է մնում ընկնի. գրկում եմ, համբուրում, իսկ նա հանկարծ հիշելով գյուղը, հարցնում է.

— Կովերի մահճակալը որտե՞ղ է։

— Կովերի մահճակալը խոտերի մեջ է։

— Իսկ իմը ինչու՞ խոտերի մեջ չի։

— Քոնը խաղալիքների արկղի մոտ է։

— Արկղում ո՞վ կա։

Ես արկղից հանում եմ խաղալիքները ու թըվարկում.

— Մի չար գայլ։

— Ջէ, բարի՛ գայլ։

— Մի լավ, բարի գայլ ու մի խորամանկ աղվես։

— Ջէ, միամի՛տ աղվես։

— Մի ձուկ, մի մուկ։

— Ձկանը՝ ջրի մեջ, մկանը բնի մեջ դնենք։

— Դնենք,— համաձայնում եմ ես։

Եվ Շամունիկը վազելով գնում է ու մի բաժակ ջուր է բերում։ Ճանապարհին նա ջուրը թափում է հատակին։ Ձկանը ջրի մեջ ենք գցում, մկանը՝



տան անկյունում ենք տեղավորում։ Եվ Շամունիկը հանկարծ փիսիկ է դառնում ու մլավում.

— Միաու՜, ես Աղաբեկի չալ կատուն եմ։

— Փը՛շտ,— ասում եմ ես։

— Մի՛ ասի՝ փըշտ, ես բարի կատու եմ, ես ձուկ-մուկ չեմ ուտում։

— Իսկ ի՞նչ ես ուտում։



Իսկ Մինասը՝ վարպետ հմուտ,
Տաշեց, շարեց։
Եվ ահա, տե՛ս, ձնեմարդը
Կանգնեց շիտակ.
Առած բակն ու շրջապատը
Հայացքի տակ։
Ճեկ Մինասը նայեց, խորհեց,
Մտքում ինչ-որ բան որոշեց։
Ու պոկ եկավ մեր կտրիճը,
Թաքուն բերեց
Փոքրիկ ռադիոընդունիչը,
Ձնեմարդի կրծքում դրեց։



Իսկ աչքերում մի-մի կտոր
Սպիտակ աղ.
Ա՛յ քեզ հրաշք. լաց էր լինում
Ձնեմարդը արցունքով պաղ։
Հետո հանկարծ խոսեց, երգեց
Նա բարձրաձայն.
Փոքրիկները այդ հրաշքից
Շատ զարմացան։
Քեռի Մոսին, երբ որ եկավ
Բակը մտավ,
Նայեց մի պահ ձնեմարդին,
Գլխի ընկավ։
— Ապրե՛ս, ապրե՛ս, հնարամիտ
Ճեկլիկ Մինաս.
Երբ մեծանաս,
Դու գյուտարար պիտի դառնաս։



— Մածուն։

Հիմա նորից եմ գնում խոհանոց ու մի բաժակ մածուն եմ բերում։

— Դե մո՛տ արի, Աղաբեկի՛ չալ կատու, այս մի գդալ մածունը հափ արա։

Շամունիկը գդալ-գդալի ետևից հափ է անում, իսկ ես ամեն մի հափի հետ «փըշտ» եմ ասում, և մենք երկուսով ծիծաղում ենք. խաղալիքները



նույնպե՛ս ծիծաղում են, բոլորը. բոլորը ծիծաղում են։ Հետո ես ասում եմ.

— Հոգնեցի։

Իսկ նա նայում է ինձ ու հարցնում.

— Աշխատանքից ես եկե՞լ։ Պառկիր,— գլուխդ դիր իմ գոգին ու քնի։

Ես պառկում եմ հատակին, գլուխս դնում նրա մի բուռ գոգի մեջ և ձևացնում, թե քնել եմ, իսկ նա անհանգիստ նայում է շուրջն ու ասում.

— Գետաձին էլ է աշխատանքից եկել, հոգնել է, արջն էլ է հոգնել, սկյուռիկն էլ է հոգնել, նապաստակն էլ է հոգնել, ծիտիկն էլ է հոգնել՝ բոլորին դիր իմ գրկի մեջ՝ թող քնեն։

Համաձայնում եմ, Շամունիկին տանում, երեսը լվանում եմ, շորերը հանում ու պառկեցնում եմ անկողնում, իսկ արջին, գետաձիուն, սկյուռին, ծիտիկին և էլի շատ-շատերին տեղավորում եմ ծոցում։ Ու նա փակում է աչքերը և, իր գրկում մի ողջ աշխարհ պահած, քնում է։

Զգո՜ւյշ, մեծե՛ր, Շամունիկը քնած է, և նրա գրկում քնած է մի ողջ աշխարհ։ Մի՛ աղմկեք, մի՛ գոռգոռացեք, անգամ ուրախության պահին ըմպանակները զգույշ զարկեք իրար, այնպես զարկեք, որ թվա, թե աստղեր են ղողանջում։ Աշխարհն այնտեղ, նրա գրկում խաղաղ ու հաշտ է։ Արջերը, նապաստակները, սկյուռները, գայլերը, վագրերը, բոլո՜րը, բոլո՜րը զառնուկների նման քնած են կողք-կողքի։

Զգո՜ւյշ, մեծե՛ր, Շամունիկի գրկում հաշտ ու խաղաղ մի աշխարհ կա։

Ողջ գիշեր սկյուռիկը Շամունիկի համար պատմություններ արեց, իսկ մենք՝ մեծերս ոչինչ չհասկացանք, որովհետև մեզ համար չէր պատմում, ու մենք չգիտեինք նրա լեզուն։

Սկյուռիկը Շամունիկին պատմել էր, թե անտառից է եկել, ուր սունկի, փտած տերևների բույր և նոր ծլած կանաչի վրա եղնիկների ոտնահետքեր կան։ Անտառում սկյուռիկը ծառի վրա էր ապրում և ոչ թե կախված էր պատին, ինչպես այստեղ՝ տանը։ Մեզանից և ոչ մեկը չլսեց նրա պատմությունները, բայց առավոտյան, երբ Շամունիկը արթնացավ, աչքերը տրորեց՝ մոլորված պատմություններ կային նրա թարթիչներին։ Դրանցից մեկը սրնեփ նապաստակի պատմությունն էր, որ բոված կաղին աղալու ժամանակ փռշտաց և արթնացրեց անտառը, մյուսը՝ ատամնացավից տառապող գայլի և ատամնաբույժ զառնուկի մասին էր։ Հետո՝ պննասեր աքլորի, նրա կարմիր կատարի ու մետաքսե մորուքի պատմությունը։

Թարթում է Շամունիկը իր քնատ աչքերը և պատմությունները թարթիչներից մեկիկ-մեկիկ թափվում էին վերմակի վրա։ Եվ ես, որ այդտեղ էի, մի բուռ պատմություններ հավաքեցի, որ հիմա պետք է պատմեմ ձեզ, մեծե՛ր, ձե՛զ, որ չգիտեք սկյուռների լեզուն և չեք կարող երբեք հասկանալ նրանց կանաչ զրույցները։

* * *

Այս հրաշքը կատարվեց մեր տանը։ Բոլոր խաղալիքները հանկարծ կենդանացան, ծտերը ծլվլացին, կատուները մլավեցին, փղերը շեփորեցին, առյուծները հորանջեցին, կապիկները քորեցին մեջքները, շները հաչեցին, մրգերը հյութով լցվեցին, ծաղիկները բուրեցին, նապաստակները կերան թղթե գազարները, փշիկը վերադարձավ անտառ։ Բացատում սպասում էին նրան։

— Այդ որտե՞ղ էիր,— հարցրեց ծեր լորենին։

— Շամունիկենց տանը։

— Ի՞նչ կար այնտեղ։

— Այնտեղ երկու պապեղբայր, մի քեռի, մի եղբայր, մայրիկ, հայրիկ, մորաքույրեր, հորաքույրեր և Շամունիկն՝ ինքը։



— Մեծ տուն է, համարյա մի անտառ,— ասաց ծեր լորենին։— Ճյուղերիդ վրա թռչուններ երգո՞ւմ էին։

— Երգում էին,— ասաց փշիկը։

— Էլ ինչու՞ վերադարձար։

— Ոտքերիս տակ հող չկար...

* * *

*— Ինչու՞ են ինձ այսպես զարդարել,—հարցըրեց ինքն իրեն Կարմիր Գլխարկը, երբ բոլորը քնած էին,—անտառում ես ինքս էի զարդարվում:*

*Սա լսեց միայն Շամունիկը:*

*— Անտառում եղյամ էի հագնում, սառույցե ժանյակներ կախում վզիցս, ոտքերիս տակ նապաստակներ էին քնում,—խոսում էր Կարմիր Գլխարկը ինքն իր հետ:*

*— Ո՞վ բերեց քեզ այնտեղից,—հարցրեց հանկարծ Շամունիկը:*

*— Մի չար անտառահատ:*

*— Զգայիր, ասեիր, որ ինքը՝ Շամունիկը կգա:*

*— Ասացի, չհավատաց:*

*— Դե, գնանք, թող բոլորը հավատան, գնանք ու էլի ետ գանք:*

*Ու նրանք խոր գիշերին երազով վերադարձան անտառ: Եվ Շամունիկն անտառի ճանապարհին տեսավ աշխարհի բոլոր երեխաներին, որ կարմիր գլխարկների հետ վերադառնում էին անտառ:*

*Առավոտյան մի բուռ պատմությունների մեջ ես գտա այս պատմությունը Շամունիկի փոքրիկ ափում ու հարցրեցի.*

*— Շամունիկ, սա ի՞նչ է, գիշերը Կարմիր Գըլխարկի հետ անտառ ես գնացե՞լ:*

*— Նա կարոտել էր իր հայրիկին ու մայրիկին:*

*— Իսկ ինչու՞ նրան չթողեցիր անտառում*

*— Որ չկարոտի ինձ,—ասաց Շամունիկը և նայեց Կարմիր Գլխարկին, իսկ նա իր գիպսե գլխի շարժումով հաստատեց և թերևս ասաց*

*— Այո՛, կկարոտեի քեզ:*




*ՌԱՖԱՅԵԼ ՇԻՐՈՅԱՆ*

*Նկ. ԱՆԱՏՈԼԻ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Նունևին տարան աչքի հիվանդանոց: Հազիվ յոթ տարեկան թռվռուն, ծվլան մի աղջիկ էր նա: Կրակի կտոր: Մի վայրկյան հանգիստ չէր մնում: Վազվըզում էր հարկից-հարկ, ման գալիս միջանցքներում, մտնում էր հիվանդասենյակները, բժիշկների և քույրերի մոտ, ուշադիր վննում ամեն ինչ: Ուր մտնում էր Նունեն, բոլորը սիրալիր ժպտում, գուրգուրում, փայփայում էին նրան:

Երեք օր էլ չկար, ինչ նա հիվանդանոց էր եկել, բայց արդեն ամեն ծակուծուկ գիտեր, ամեն քունջ ու անկյուն մտել դուրս էր եկել: Մի Նունե, մի հիվանդանոց:

Շատերն արդեն գիտեին նրան: Լսել էին նրա երգն ու արտասանությունը: Անուշիկ, սիրունիկ էր Նունեն, և բոլորը իրենց մոտ էին կանչում նրան:

Մի անգամ էլ, երբ Նունեն ավարտելով «Մանուշակ» երգը, դուրս վազեց միջանցք, տեսավ ռետինե չորս անիվներով սայլակ-պատգարակ, որի վրա պառկած էր հաստափոր մի քեռի՝ աչքերը կապած. սայլակը քշում էր սպիտակ խալաթով մորաքույրը, որը հոգնած դեմք ուներ:

...Նունեն գնաց սայլակի ետևից՝ աչքը չկտրելով վազող անիվներից: Սայլակը կանգ առավ հիվանդասենյակներից մեկի առջև և թեքվելով ներս գնաց: Քիչ հետո սայլակը դուրս եկավ դատարկ: Քեռին վրան չէր: Նունեն կանգնած սպասում էր, որ խալաթով մորաքույրը հիմա էլ իրեն կպառկեցնի սայլակին ու կտանի: Բայց մորաքույրը նույնիսկ Նունեի կողմը չնայեց և սայլակը հրելով տարավ միջանցքի մյուս անկյունում կանգնեցրեց:

Նունեն վախվխելով մոտեցավ սայլակին ու ձեռքով շոշափեց անիվները: Ուզեց վրան նստել: Չկարողացավ: Բարձր էր: Այդ պահին լսվեց ծանոթ մորաքրոջ ձայնը.

— Չի՛ կարելի, աչի՛կ ջան, բժշկուհին կտեսնի, կբարկանա:

Նունեն մի պահ շփոթված կանգնած մնաց տեղում: Ասես շուրթերը կիտելով կրկին նայեց անիվներին ու վազեց մոր մոտ.

— Մա՛, ասա ինձ էլ նստեցնեն սայլակին,—թընգթընգալով ասաց Նունեն:

— Ի՞նչ սայլակ,—հարցրեց մայրը:

— Ա՛յ, որ անկյունում կանգնած է, չորս ակ ունի, մեծ...

— Էդ սայլակը, լալա՛ ջան, խաղալու համար չէ:

— Բա աչքը կապած քեռին ինչո՞ւ էր վրան պառկել ու քշում էին։

— Քեռու աչքը վիրավոր է, քայլել չի կարող։

— Գնանք տուն,— մոր պարանոցին փաթաթվելով, լացակումած ասաց Նունեն։

Մայրը ժպտալով գրկեց աղջկան ու մոտեցրեց պատուհանին, որ բացվում էր լայնահուն փողոցի վրա։ Գարուն էր։ Կանաչել էին ծառերը, ներդաշնակ ծլվլում էին թռչունները։ Փողոցով խռար պոչից կպած, հանդարտ սահում էին ավտոմեքենաները։

Մաքուր, ասֆալտապատ մայթերով անցուդարձ էին անում մարդիկ։ Ուրախ, աղմուկով քայլում էին դպրոցական երեխաները։ Նրանք միշտ կանգնում, տաք-տաք վիճում էին և ապա իրար հրմշտելով շարունակում ճանապարհը։ Նունեն հափշտակված նայում էր, մոռանալով սայլակը։ Նայում էր մտայրքաղ, ասես հիշում էր իրենց գյուղը, որ փռված էր սարալանջին, կանաչի մեջ թաղված։ Մտովի վազվզում, խաղում էր իր ընկերների հետ։ Հետո կանաչ խոտից տիկնիկի համար անկողին էր սարքում ու պառկեցնում ծառի հովին, որ քնի։ Բայց տիկնիկը չէր քնում, ձկան սառած աչքերով իրեն էր նայում։ Բա ծառի փչակը, որտեղ թաքնվում էր Նունեն տափկնոցի խաղալիս...

Ինչո՞ւ էր հիվանդանոց եկել Նունեն, ի՞նչ ուներ նա այստեղ։ Կարինեն եղավ պատճառը, իր ընկերուհին։ Գնդակ խաղալիս կռվել էին, Կարինեն բոլորի մոտ Նունեին ասել էր «շլդիկ»։ Նունեն լաց լինելով գնացել էր տուն ու պատմել մորը։

Կարինեն, իհարկե, սուտ չէր ասել, չէր հորինել։ Նունեի մի աչքը, իրոք, շլդիկ էր։ Այդպես էլ նա ծնվել էր։ Բայց ինքը չգիտեր, ոչ ոք նրան «շլդիկ» չէր ասել։ Կարինեն ասաց։ Այդ խոսքից էլ վիրավորվել էր Նունեն, սաստիկ հուզվել, վշտացել էին նաև ծնողները։

...Հաջորդ օրը Նունեին տարան ակնաբույժի մոտ։

...Նունեն ձանձրույթից դեռ թնգթնգում, պահանջում էր մորից գյուղ վերադառնալ, երբ հիվանդասենյակ մտավ բուժքույր Արուսյակը, որի հետ Նունեն արդեն մտերմացել էր։

— Դե՛, արտիստուհի՛, գնանք,— ուրախ կատակով ասաց քույրը։— Հիմա քեզ նստեցնելու ենք սայլակին ու քշենք...

Նունեն պայծառացավ։ Նա ժպտուն հայացքով նայեց մորը և քրոջ հետ դուրս գնաց։ Մայրն իսկույն հասկացավ, որ երեխային տարան վիրահատման. Քանի օր էր արդեն, ինչ բժիշկները ստուգում, զննում էին երեխայի աչքը։

Երբ քրոջ հետ Նունեն մտավ վիրահատարան, նրանց ընդառաջ եկավ թխադեմ, գանգրահեր բժշկուհին։ Նա բռնեց երեխայի թաթը և կամացուկ հարցրեց.

— Նոր ոտանավոր սովորե՞լ ես, աչի՛կ ջան։

Նունեն գլխով հաստատական նշան արեց։

— Իսկ նոր երգ չե՞ս սովորել,— հարցրեց մեկ ուրիշը։

Նունեն այդ չլսեց։ Նրա ուշքն ու միտքը իր հետ խոսող բժշկուհու կողմն էր, որի քիթն ու բերանը կապված էր մառլայով։ Նունեն աչքի տակով նայեց մյուսներին։ Նրանցն էլ կապված էին, Արուսյակինն էլ։ Կարծելով, որ այստեղ ինչ-որ լավ բան կա, Նունեն ոգևորված ասաց.

— Դե, իմն էլ կապեք։

Ուրախ քրքիջ բարձրացավ։ Նունեն ամաչեց, ետ-ետ գնաց։ Ապա ինչ-որ բան փնտրելով, նայեց այս ու այն կողմ և, չգտնելով, շշնջաց Արուսյակի ականջին.

— Բա ո՞ւր է սայլակը, հը՞, ասում էիր...

— Շուտով կգա, մի քիչ համբերիր։

Այդ ասելով, Արուսյակը գրկեց Նունեին ու հանգիստ պառկեցրեց սպիտակ շորերով ծածկված սեղանին։ Բոլորը գործի անցան։ Սենյակում լարված լռություն տիրեց. երբեմն լսվում էին միայն կիսաձայն խոսակցություններ և գործիքների խուլ չխկոց։



Իսկ միջանցքն անհանգիստ էր։ Հավաքվել էին հիվանդներ՝ կին ու տղամարդ, ծեր ու երիտասարդ. խումբ-խումբ կրուցում էին, մտքեր փոխանակում։ Նրանց մտահոգությունը Նունեն էր։ Շուտով վիրահատարանից դուրս բերին պատգարակ-սայլակը, որի վրա լուռ պառկած էր Նունեն՝ աչքը կապած։ Ապա դուրս եկան բժշկուհին և քույրերը։ Հիվանդները շրջապատեցին նրանց.

— Է՛, ինչպե՞ս անցավ։

— Աղջկա աչքը լրիվ շտկվե՞ց, թե՞ չէ։

— Տեսողությունը լա՞վ է։

— Հո լաց չեղա՞վ երեխան։

Բժշկուհին կարմացած ժպտում էր։ Չգիտեր որին պատասխանի։

— Ամեն ինչ բարեհաջող է, ընկերնե՛ր,— բոլորին լսելի ձայնով ասաց բժշկուհին,— անհանգստանալու կարիք չկա...

Զարմացել էր և Նունեի մայրը, որ մտախոհ քայլում էր սայլակի կողքից. Նունեն չգիտեր ինչ է կատարվում իր շուրջը: Նա շարունակ մորն էր նայում ու մեղմ շշնջում.

— Մա՛, ցավո՞ւմ է աչքս:

— Բան չկա, բալի՛կ ջան, մեղուն է կծել, կանցնի:

Անցավ մի քանի օր էլ, Նունեի աչքի կապը արձակեցին և հիվանդանոցից դուրս գրեցին: Ինչպե՞ս էր ուրախացել, ինչպե՞ս էր թռչկոտում, ծլվլում: Եվ ամեն կողմից կանչում էին, որ գնալուց առաջ մի բան երգի, արտասանի: Նունեն երգում էր ու արտասանում: Մի ոտանավոր էլ նոր էր սովորել.

Մեծ Հոկտեմբեր,
Հապար բարև,
Մեկ կյանք տվող
Պայծառ արև...

Ինքն էլ ասես, մի փունջ արև, շողշողում, ճառագայթում էր, խինդ ու ժպիտ սփռելով շուրջը:

Անասելի թեթևություն զգացին Նունեի հայրն ու մայրը, երբ երեխայի ձեռքից բռնած, դուրս եկան հիվանդանոցից: Փարատվեց, ցրվեց այն ծանր վիշտը, որ պատճառել էր նրանց:

Էլ չի արտասվի Նունեն: Երբեք, երբեք չի արտասվի: Նա շիտակ աչքերով է նայում այժմ աշխարհին:

# ՄԵԿ ՎԵՑԵՐՈՐԴ ՆԱՐԻՆՋԸ



ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ

Նվ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Դա երեսուն տարեկանին մոտ, գեղեցիկ, լավ հագնված մի կին էր: Կինը քայլեց, առանց նայելու, թե տղան հետևո՞ւմ է իրեն: Կինը մտքերի մեջ ընկած շտապ գնում էր, և տղան հազիվ էր հասնում իր նիհար ոտքերով: Հետո կանգնեցին մի շքամուտքի առաջ: Կինը պայուսակից հանեց բանալին, շքամուտքի դուռը բաց արեց, ներս թողեց տղային, դուռը հետևից բանալիով փակեց ու բարձրացավ աստիճաններով: Տղան չգիտեր, այստե՞ղ պետք է սպասի, թե՞ հետևի նրան:

— Արի,— արդեն երկրորդ հարկի հարթակից ասաց նրան կինը:

Տղան բարձրացավ, մտավ մի ճոխ կահավորված սենյակ: Կինը տխուր, սիրուն աչքերով չափեց տղային և ասաց.

— Ծանր գործ չեմ տալիս քեզ: Իմ մի բարեկամն այստեղ՝ բանտումն է: Հարկավոր է երկու օրը մեկ նրան ուտելիք տանել: Ես այդ բանը ինքս չեմ կարող անել: Հիմա արի, ես ցույց կտամ...

Կնոջը հետևելով տղան հայտնվեց խոհանոցում:

— Պրոշան էսօր նորից չի գալու,— ինքնիրեն խոսեց կինը:— Հիմի ամենքը երես են առել... Հիմա մենք ենք ծառաներ դառնալու... Նայիր, այս բոլորը քեզ, կե՛ր, վերցրո՛ւ... Եթե դու ինձ խաբես...

Տղան տխուր նայեց կնոջը: Ախր ինչպե՞ս կարելի է խաբել այդքան գեղեցիկ աչքերով կնոջը:

— Ինձ թվում է չես խաբի... Դու քաղաքի՞ց ես...

— Չէ՛...

— Որտեղի՞ց ես...

— Գյուղից...

— Ինչո՞ւ ես ընկել այստեղ...

— Մերոնց սպանեցին, մնացի մենակ, մեր գյուղից մի մարդու հետ եկանք քաղաք, սոված էինք... Հետո նրան կորցրի, մնացի...

— Լավ,— ասաց կինը ու նորից ցույց տվեց հատակի մի անկյունը, որ ծածկված էր լրագրերով,— սրանք քեզ... Կե՛ր...

Նա գնաց:

Տղան զգուշորեն ետ քաշեց լրագիրը: Այնտեղ, հատակին թղթերի վրա թափթփված էին ուտելիքների մնացորդներ: Շատ էին: Չնայած տղային թվաց, թե ինքը արագորեն, միանգամից կկարողանա այդ ամենը ուտել, բայց շատ էին: Սկզբում վախվխելով, իսկ հետո հասկանալով, որ այդ բոլորը աղբի մեջ թափելու համար էին, նա վրա տվեց: Հացի կտորներ, կիսակրծած ոսկորներ, մրգի ու ճաշերի մնացորդներ...

— Լավ,— ներս գալով ասաց կինը,— հիմա հարկավոր է շտապել:

Տղան հատակից բարձրացավ ու ափսոսանքով նայեց այդ կույտին, որի փոքր մասն էր միայն ոչնչացրել:

— Դու այդ ամբողջը,— ասաց կինը,— կարող ես հետդ վերցնել: Իսկ հիմա ուշադիր լսիր, ամեն ինչ բացատրեմ... Ես հեռվից կհետևեմ քեզ: Մեկ էլ կգաս վաղը չէ, մյուս օրը:

...Նա քայլում էր փողոցով, երկու թևատակերին փաթեթներ և ծոցում մի նամակ: Նա ժպտում էր, հետևից զգալով կնոջ հայացքը:

Բանտի ընդունարանում նա բավական սպասեց:
— Սա է...

Տղան հասկացավ, որ այդ իրեն էր վերաբերում ու տեսավ առանց ուսադիրների ու գոտու, գլխաբաց մի փինվորականի, որին ներս էին բերել ընդունարան՝ մի ուղեկցող զինվորի հսկողությամբ:

— Դու ինձ նամա՞կ ես բերել, ծանրո՞ց ես բերել,— շշնջաց ձերբակալվածը:

Տղան գլխով արեց:

Ուղեկցող զինվորը վերցրեց ծանրոցն ու դնելով սեղանին, բաց արեց: Նա մեկ-մեկ տնտղում էր ուտելեղենները, կննում շշերի պարունակությունը, քանդում էր ծխախոտների փաթեթները ու միաժամանակ քթի տակ քրթմնջում.

— Տես, ո՜նց են ապրում...

Ձերբակալվածը արհամարհանքով նայում էր բանտի աշխատողին և ջղայնորեն ոլորում փոքրիկ սրածայր բեղերը: Տղան ուշադիր հետևում էր և, հարմար առիթից օգտվելով, նամակը խցկեց ձերբակալվածի ձեռքը.

— Մորաքրոջս կասես, որ լավ եմ, թող չանհանգստանա և մյուս անգամ ծխախոտ շատ ուղարկի...

Կինը փողոցում սպասում էր: Նա անհամբերությունից քիչ էր մնում մատներով դուրս կորզի խոսքերը տղայի բերանից:

— Դե պատմիր, շո՛ւտ, նա շա՞տ է փոխվել... Ասենք, դու ի՞նչ իմանաս... Նա հիվանդի պե՞ս էր, տխո՞ւր էր, բան չասա՞ց, նիհարե՞լ էր... Նա նիհա՞ր էր...

Հետո տղան կուշտ էր և քնել էր ուզում: Նա թևատակին սեղմած թանկագին կապոցը, ուր դեռ ահագին ուտելիք կար՝ քարշ էր գալիս փողոցներում, ուր ամեն մի քիչ թե շատ հանգիստ անկյունում առաջ հեշտությամբ պառկում էր: Բայց հիմա տեղ չէր գըտնում: Հիմա նա արդեն ոչ միայն հանգիստ անկյուն էր որոնում, այլև մի տեղ, որպեսզի ապահով լինի: Նա հարըստություն ուներ, նա վախենում էր, որ քընած ժամանակ իրեն թալանեն: Այստեղ էր, որ սկսվեց գրպանի պատմությունը: Նա վերջապես հանեց շապիկը և շալվարի ներսում շապիկից մի գըրպան սարքեց: Շատ խորն էր գրպանը, համարյա հասնում էր գետնին: Ամբողջ ունեցվածքը տեղավորեց այդ գրպանում: Գըրպանը քայլելիս խանգարում էր, բայց հիմա կարող էր հանգիստ լինել: Գրպանից դժվար թե կարողանային հանել ուտելիքը, որքան էլ խոր քնած լիներ:





Մեկ օր հետո այդ ամենը կրկնվեց ու նրա պահեստը նորից լցվեց: Նա այդ ժամանակ կուշտ էր և ուտելիքը նոր էր վերջացել: Նա հիմա հանգիստ ու ապահով կյանք էր վարում և հանկարծ նրան սկսեց թվալ, թե ինքը շատ բախտավոր է և որ կյանքն իր համար վերջնականապես լավացել է: Նա երկու օրում ահագին խելոքացել էր և արդեն գիտեր, թե առաջ ինչը պետք է ուտի՝ որ չփչանա, ինչը կա-

Իսկ հաջորդ անգամ...

Կինը դարձյալ սպասում էր փողոցի անկյունում:

Տղան վերադարձավ՝ ծանրոցը թևատակին:

— Նրան չտեսա՞ր,— դեռ հեռվից անհանգստությամբ հարցրեց կինը:

— Չէ...

— Ի՞նչ ասացին...

— Ասացին, որ նրան էս աշխարքում էլ ոչինչ պետք չէ...— աշխուժորեն պատասխանեց տղան:

— Ի՞նչ... Ա՜խ, տեր իմ աստված...

Կինը աչքերը ծածկեց ձեռքերով ու մեխվեց տեղում: Նրա ուսերը սկսեցին ցնցվել...

— Ամեն ինչ վերջացավ, ամեն ինչ վերջացավ...

Հետո նա արտասվելով, դանդաղորեն, գլխահակ քայլեց:

Տղան հետևում էր նրան:

— Դե կորի՛ր, ի՞նչ ես կպել,— հեկեկոցների մեջ բարկացավ նրա վրա կինն ու արագացրեց քայլերը: Տղան մնաց փողոցում՝ վերջին կապոցը կրծքին սեղմած...

Մի քանի օր հետո նորից սկսվեց սովը...

* * *

Նրան արթնացրեց բարձրաձայն խոսակցությունը:

Կալանավորներից մեկը մոտեցած միջանցքի պատուհանին, ասում էր.

— Լսի՛ր, զինվոր, եթե շուտով ինչ-որ տեղ երկար կանգ առնենք՝ ծխախոտ և ուտելիք կառնեք մեկ համար, ա՛ռ, վերցրո՛ւ փողը...

— Թե որ պարոն օֆիցերը թույլ տա...

— Թույլ կտա, մի՛ վախի,— ասում էր նրա հետ բանակցողը:— Լսիր, կգնես հաց և կտեսնես, թե էլ ի՞նչ կարելի է ճարել, թե չէ ձեր հաց ու ջրով... հացն էլ հաց լինի...

Հետո նա պատուհանի վանդակների արանքներից դուրս մեկնեց մի քանի թղթադրամ...

Տղան նոր միայն զգաց, որ ինքը արթնացել է ոչ թե այդ խոսակցությունից, այլ հացի հոտից: Վագոնի ներսում ավելացե՞լ էր լույսը, թե՞ ինքն էր արդեն ավելի լավ տեսնում, միայն թե առարկաները պարզո-

րոշ երևում էին: Բոլորի մեջտեղում, հատակի վրա ինչ-որ փալաս էր փռված, վրան՝ մի կտոր հաց: Տղան աչքերը բացեց ու առանց դիրքը փոխելու, գաղտագողի նայում էր հացին:

Իսկ փինվորի հետ բանակցությունների մեջ մտած բանտարկյալը նստեց, նայեց տղայի կողմն ու չգիտես ում, հարցրեց.

— Սա դեռ քնա՞ծ է...

— Քնած է,— պատասխանեց վագոնի անկյունից մյուսը:

— Սա շատ քաղցած է,— ասաց առաջինը:

— Մեզ հետ միասին գցել են նաև ինչ-որ ավազակի...

Տղան ձայնից ճանաչեց: Այդ նա էր, ով ամենասկզբում կոպտորեն էր խոսել իր հետ:

— Ավազա՜կ է...— հեգնանքով ասաց նա. որը նստել էր տղային ամենից ավելի մոտիկ:— Ավազա՜կ է... Իսկ ինչո՞ւ է ավազակ: Դու գիտե՞ս, թե ով է սա, գիտե՞ս, թե ինչպես է ավազակ դարձել... Ես կարմանում եմ քեզ վրա ու չեմ հասկանում, թե... Լսի՛ր, դու ինչո՞ւ համար ես կռվել ու հիմա ինչո՞ւ ես նըստած այս մութ վագոնում: Ավազա՜կ... Գուցե ա՞յս տղայի համար... Հը՞...

Մի պահ լռություն տիրեց:

Հետո շշուկով խոսում էին, բայց տղան կամ չէր լսում, կամ չէր հասկանում, թե ինչ են խոսում...

— Կենտրոնից մեր վերջին ամիսների կտրվածությունը մեր պարտության պատճառը դարձավ...

— Պարտվողները երբեք չեն իմանում իրենց պարտության պատճառները, այդ մնում է գալիք սերնդին...

— Իսկ հաղթողնե՞րը...

— Ի՞նչ... քո կարծիքով այս ողորմելինե՞րն են հաղթել, ովքեր հրացաններն առած ուղեկցում են մեզ... Հեղափոխությունն առանց ճեղքերի չի լինում: Դավաճանները ինչ-որ կետերում կասեցնում են Լենինի* օգնությունը:

— Տեսնես, Լենինը գիտե՞, որ մենք...

— Լենինը գիտե...

— Լենինը ամեն ինչ իմանում է, միայն թե դեռ մեր ուժերը...

— Տղանե՛ր, ես հիմա կարմանալի մի բան եմ մտածում: Պատկերացնում եմ, որ հիմա ինչ-որ մի կայարանում մեզ կդիմավորեն բարեկամական ժպիտներով, ծաղիկներով, մեզ կտանեն ճոխ հյուրասիրության: Այս ամիսների ընթացքում մենք շատ հոգնեցինք...

— Զարթնեց...

— Տղա, դու կարթո՞ւն ես...

— Ամեն մի ավազակի հետ մեզ խառնում են...

— Գողերի ու ավազակների հետ:

— Վերջ տվե՛ք... Գուցե իսկապես գող է, ավազակ է... Շատ հնարավոր է... Բայց ո՞վ է մեղավորը, որ սա գող ու ավազակ է: Մենք սրա նմանների համար ենք անում ինչ որ անում ենք... Սրանց նմանների... Եթե կուզեք իմանալ, ինչ-որ ձևով սա մերոնցից է: Սա մերն է... Իսկ դուք... Սա ուղղակի քաղցած մարդ է, շատ երկար ժամանակ քաղցած մնացած:

...Տղան կարթնել էր քնից ու երազներից և հիմա լսում էր ու դժվարությամբ սկսում հասկանալ, որ այդ ամենը իր մասին են: Իսկ երբ հասկացավ՝ վախեցած սսկվեց տեղում:

— Երևի դու ճիշտ ես...

— Ես էլ եմ կարծում, որ ճիշտ են... Օբյեկտիվ ճշմարտություն: Բայց պետք է իմանալ, թե սա ո՞վ է, սա հո պրովոկատոր չէ՞...

— Առայժմ սա քաղցած է... Լսիր, դու կարթո՞ւն ես...

Եթե սովածության մասին խոսք չլիներ, տղան երևի չարձագանքեր, բայց հիմա մի ծանր վիշտ բարձրացավ նրա հոգում: Նա առաջին անգամ վիշտ զգաց այն բանի համար, որ ինքը քաղցած է: Առաջին անգամ իր սովածության մասին նա մտածեց: Գուցե նկատում էր նաև վագոնի հատակին դրված հացը: Նա շարժվեց:

— Դու կարթո՞ւն ես... Դե, նստի՛ր...

Տղան նստեց տեղում:

— Կեր,— ասաց նրա կողքին նստած մարդը և հացը փալասով միասին քաշեց նրան մոտիկ:

Տղան տատանվեց: Ավելի հեշտ կլիներ, եթե մի կտոր կտրեին ու տային նրան:

— Կե՛ր,— պնդեց մարդը:

Տղան վերցրեց հացը, կիսեց, կեսը տեղը դրեց ու սկսեց ուտել:



Լռություն տիրեց: Լսվում էր միայն տղայի ծնոտների աշխատանքի ձայնը: Տղան հացի մյուս կեսն էլ կերավ: Նա կշտացավ ու նույնիսկ մի քիչ ամաչեց: Մի քիչ մտածեց, որ այս մարդիկ երևի ուրիշ բան չունեն ուտելու և մի քիչ ամաչեց:

— Դու ո՞վ ես...

Տղան նայեց հարց տվողի երեսին:

— Քեզ ինչո՞ւ են բռնել...

Տղան ինքն էլ չգիտեր, թե ինչու են իրեն բռնել: Հիմա նա կուշտ էր, չնայած էլի կկարողանար ուտել, և այդ կշտությունը նրան խանգարում էր հիշել անպահերը, երբ սովածությունից հուսահատված, նա կարող էր ձեռքը մեկնել, առանց հասկանալու, թե ումն է այս ուտելիքը կամ ինչ է...

— Ես սոված էի,— ասաց տղան:

— Ու դու գողությո՞ւն արեցիր:

— Ես վերցրեցի...

Եվ այդ ասելիս տղան ոտքի մոտ, կրունկից քիչ վեր կգաց ինչ-որ առարկա: Առաջին նարինջը, որ վերցրել էր: Նա սաստիկ ցանկություն կգաց շոշափելու այդ նարինջը, բայց գրպանը շատ խորն էր ու նա ամաչեց: Նա կյանքում երբեք նարինջ չէր կերել: Աղբակույտերում նրան պատահել էին նարինջի կեղևներ, որոնք տղան հաճույքով կերել էր, չնայած որ դրանք դառնահամ էին լինում, բայց նարինջ՝ երբեք չէր կերել:

Այդ միջոցին գնացքը կանգ առավ:

(Շարունակելի)



# ՊԵԳԱՍԸ

ՀԵՆՐԻ ԼՈՆԳՖԵԼԼՈ

Երբ արշալույսը ոսկեզօծ
Ներկեց դաշտ ու անտառ,
Բանաստեղծի թևավոր ձին
Մտավ գյուղը դանդաղ:

Աշուն էր խոր, դեզի վրա
Լորերն էին սուլում,
Վառվում էին ածխի նման
Խնձորները փայլուն:

Եկեղեցու զանգը հնչեց
Աղոթքի պես կույսի,
Բայց չկարծեք ողջունում էր
Մուտքը իմ Պեգասի:

Եվ ձին տեսավ մշուշապատ
Մի գեղեցիկ աշխարհ,
Հնչեց բուրմունքը չոր խոտի,
Շարժեց պոչը երկար:

Դպրոցական տղաները
Ջրուն դաշտում գտան,
Իսկ իմաստուն մարդիկ գյուղի
Կապած՝ ախոռ տարան:

Գյուղապետը զանգը ձեռքին
Շրջեց փողոց ու տուն,
Ասաց՝ վաղը առավոտյան
Ծախելու են ձիուն:

Շտապեցին ջահել ու ծեր
Ախոռն երիվարի,
Բայց զարմացան, երբ որ տեսան
Թևավոր ձին՝ գերի:

Եվ օրն անցավ, ցուրտ երեկոն
Ծածկեց դաշտ ու անտառ,
Բայց ձին մնաց առանց խոտի,
Որպես կորած մի գառ:

Ձին նայում էր համբերությամբ
Սև ձողերի միջից,
Թե ինչպես է գյուղի վրա
Լուսինն ելնում նորից:

Հնչեց զանգը կեսգիշերվա,
Մարդ չմնաց ոտի,
Կանչեց աքլորը բարձրաձայն
Ագարակից մոտի:

Ձիու ռունգերը լայնացան,
Կտրեց շղթա ու սանձ
Եվ թափ տալով բաշը ոսկյա,
Դեպի աստղեր սուրաց:

Առավոտյան, երբ գյուղացոց
Կանչեց եկեղեցին,
Գլխին զարկեց գյուղապետը՝
Տեսան՝ փախել էր ձին:

Սակայն մարդիկ հողի վրա՝
Ծաղոտ, կանաչաբույր,
Ուր սմբակն էր դիպել գետնին,
Գտան մի ջինջ աղբյուր:

Այդ օրվանից պաղ աղբյուրը
Կյանք է տալիս մարդուն,
Ջրուս ձայնն է կարկաչյունը՝
Դար ու դարեր արթուն:

Անգլ. թարգմ. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆԻ



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ




Սիրելի դպրոցականներ, դուք գիտեք, որ գիրքը ամենամեծ հարստությունն է:

Եթե չլինեին գրքերը կամ, ասենք, ձեր դասագրքերը, դուք չէիք կարողանա պատրաստել ձեր դասերը, չէիք կարողանա գիտելիքներ ձեռք բերել, չէիք ճանաչի կյանքը, անհաղորդ կլինեիք գիտության նվաճումներին և կմնայիք հոգով աղքատ:

Դուք ծանոթ եք Մաքսիմ Գորկու կյանքին: Գիտեք, որ մանկության ու պատանեկության անուրախ տարիներին, ծանր աշխատանքից հետո, ինչպիսի հափշտակությամբ էր նա մոմի, իսկ երբեմն էլ լուսնյակի լույսի տակ կարդում ձեռքն ընկած գիրքը: Հետագայում, երբ նա դարձավ մեծ գրող, խորին ակնածանք ուներ դեպի գիրքը:

Դուք երբեք չպետք է մոռանաք նրա խորհուրդը՝ «Սիրեցեք գիրքը՝ գիտելիքների աղբյուրը: Միայն նա կարող է մեզ դարձնել հոգեպես ուժեղ, ազնիվ, խելացի»:

Իհարկե, դուք սիրում եք ընթերցել և ձեր դասագրքերից յուրաքանչյուր օր նոր բան եք սովորում: Սակայն մի բան զարմանք է պատճառում ինչպես ձեր ուսուցիչներին, այնպես էլ շատ-շատերին. ինչո՞ւ դուք, որ այնքան շատ ընթերցասեր եք ու գրքասեր, այդքան վատ եք վարվում ձեր գրքերի և առաջին հերթին՝ դասագրքերի հետ:

Թող ձեզ զարմանք չպատճառի ու տարօրինակ չթվա այս հարցը: Վերցրեք թեկուզ հենց այս ուսումնական տարվա համար գնած ձեր դասագրքերը և նայեք:

Ա՛յ, տեսնո՞ւմ եք, կազմի վրա արդեն թանաք է թափված, անցած դասերի թերթերի վրա գծեր են քաշված կամ մատնահետքեր կան, թերթերի ծայրերը ծալված են, իսկ ոմանց գրքերի էջերին նույնիսկ նկարներ ու ծաղրանկարներ կան:

Հիմա զգացի՞ք, որ անխնամ եք վարվել ձեզ գիտություն պարգևող գրքի հետ: Դե, իհարկե, ոչ բոլորդ եք անփույթ: Հատկապես աղջիկները այդ հարցում ավելի են նըրբանկատ: Բայց զարմանալի բաներ շատ կան կյանքում:

Մի անգամ, պատահաբար, ես ծանոթացա մի տղայի հետ, որի գրքերի թերթերի մի մասը չկային: Երբ ես նրան հարցրեցի, թե ինչու՞ է պատռել գրքի կեսը, նա հեգնանքով պատասխանեց.

«Այդ դասերն արդեն անցել, վերջացրել ենք, էլ իմ ինչի՞ն են դրանք պետք»: Հասկանո՞ւմ եք, տըղային ծանր է թվացել պայուսակի «բեռը» և աշխատել է այն թեթևացնել:

Մի՛ ծիծաղեք, չէ՞ որ ընկերոջ կատարած վատ արարքի վրա չեն ծիծաղում, այլ աշխատում են հասկացնել նրան:

Դուք գիտեք, որ մեր երկրում ուսումը ձրի է և պարտադիր: Պետք է սովորեն բոլոր երեխաները: Չէ՞ որ նրանք են վաղը մեզ փոխարինելու, նրանք են շարունակելու ծընողների գործը: Դե, հիմա եկեք միասին նստենք ու հաշվենք, թե քանիսն են սովորում:

Տեսնում եք, համարյա բնակչության կեսը: Իսկ դրանց բոլորին դասագիրք է պետք: Ամեն տարի վիթխարի տպաքանակով դասագրքեր են հրատարակվում, և տարեցտարի պահանջը ավելանում է: Պատկերացրեք, թե որքան մարդ է զբաղվում ծառ կտրելու, թուղթ պատրաստելու, դասագիրք տպագրելու գործով և ինչպիսի վիթխարի գումարներ են ծախսվում այդ նպատակի համար: Իսկ եթե դուք ձեր դասագրքերը մաքուր պահեք և հաջորդ ուսումնական տարում նվիրեք ձեր ընկերներին կամ փոխանակում կատարեք, որքան բանվորական ուժ ու միջոցներ կխնայվեն:

Չէ՞ որ դասագիրքը մաքուր պահելն ու հաջորդ ուսումնական տարում ընկերոջը նվիրելը կամ փոխանակություն կատարելը նույնպես հայրենասիրություն է, ձեր հայրենասիրական պարտքը:

Չէ՞իք մտածել այդ մասին: Ոչինչ, հիմա մտածեք, ձեր պատի թերթերում այդ մասին հոդվածներ գրեք, դասագրքերի պահպանման ու փոխանակման հարցը քննեք ձեր պիոներական օղակներում, ջոկատներում, ուսումնական տարվա վերջում կազմակերպեք մաքուր և խնամքով պահված դասագրքերի ցուցահանդես, հանդես բերեք դասագրքերի փոխանակման նախաձեռնություն:

Դասագրքերից բացի դուք գրադարաններից տասնյակ գրքեր եք վերցնում և ընթերցում: Այդ գրքերը օգնում են ձեզ ընդարձակելու դպրոցում ստացած գիտելիքները: Վ. Ի. Լենինն ասել է՝ գիրքը վիթխարի ուժ է: Այդ ուժը դուք զգում եք ամեն օր, ամեն ժամ, յուրաքանչյուր գիրք ընթերցելիս: Իսկ գրադարանի գրքերը ձեզանից բացի պետք է ընթերցեն նաև ձեր ընկերները: Չմոռանաք, որ դրանք նույնպես պետք է պահվեն մաքուր, ավելին, դուք պետք է մտածեք արդեն հին կազմ ունեցող գրքերը վերակազմելու մասին: Գիտեմ, ձեզանից շատ-շատերը վաղուց արդեն այդ մասին մտածել են և ընկերների հետ բազմաթիվ գրքեր վերակազմել: Սակայն ինչո՞ւ բոլորը այդպես չվարվեն:

Եկեք կատարենք մեր սրբազան պարտքը: Հոգատար լինենք մեր գիտելիքների աղբյուր գրքերի նկատմամբ, սովորենք նրանցով և հետո հանձնենք մեր ընկերներին, որ նրանք էլ սովորեն:

ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ




ուբիկն առջևից էր գնում: Նա, թըռչկոտելով մայթի սալարկներին, կլաս էր խաղում ու բառերի կեսը՝ մտքում, կեսը բարձրաձայն ասելով, շնչահատ երգում էր միայն իրեն հայտնի ինչ-որ մի երգ: Երբեմն-երբեմն նա ետ էր դառնում, փաթաթվում մոր ծնկներին.

— Մայրի՛կ, վաղը էլի՞ կգանք...

— Մա՛, կինո կգնա՞նք, պաղպաղակ կուտե՞նք...

— Կարուսել կնստե՞նք...

Մեծ քույրը՝ Քնարիկը ջղայնանում էր.

— Ոտքի տակ մի՛ ընկնի, տեսնում ես, որ խոսում ենք:

Ռուբիկը չէր նեղանում, նորից առաջ ընկնելով, շարունակում էր իր երգը:

Նրա տրամադրությունը բարձր էր: Այսօր եղել էին Հաղթանակի զբոսայգում: Ռուբիկը շրջել էր մակույկով, կարուսել էր նստել, նայել «Զոյա» կինոնկարն ու կուշտ պաղպաղակ էր կերել:

— Կե՛ր, կշտացի՛ր, — ասել էր մայրիկը՝ նրա առաջ դնելով պաղպաղակի երկու հարյուր գրամանոցամանը: Բացի դրանից, Քնարիկը իր բաժինը նույնպես քշել էր նրա առաջ.

— Ապերո՛ ջան, թե ուզում ես, սա՛ էլ կեր, — ասել էր նա:

Հիմա նրանք վերադառնում էին տուն: Իրենց նրբանցքում Ռուբիկը քայլերն ավելի արագացրեց և բոլորից շուտ հասավ կանաչ դարբասով առանձնատունը: Նա ուզում էր այսօրվա մասին ամեն բան պատմել պապիկին՝ բայց պապիկը պարտեզում չէր: Նա սլացավ աստիճաններով վեր, նետվեց հյուրասենյակ: Պապիկը չկար: Ուզեց անցնել խորքի սենյակը, բայց հանկարծ այնպիսի բան տեսավ, որ քարացավ մնաց սենյակի մեջտեղում: Պահարանի կողքին իրար վրա խնամքով դարսված էին բյուրեղապակյա սկահակի խոշոր կտորները: Այդ սկահակը տան պարծանքն էր, մեծ եղբոր՝ Գագիկի սպորտային ամենաբարձր պարգևը: Ռուբիկն ավելի փոքր էր այն ժամանակ, բայց հիշում է, թե ինչպես էին մարդիկ գալիս տուն ու շնորհավորում Գագիկին, պապիկին, հայրիկին ու






ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

մայրիկին: Քույրիկն էլ իր ընկերուհիներին էր տուն բերում և սկահակը ցույց տալով ասում.

— Եղբայրս է Ռիգայում շահել:

Ռուբիկն էլ փողոցում էր ընկերների մոտ պարծենում:

Եվ ահա հիմա սկահակը կոտրված էր: Դա Ռուբիկի համար այնքան ցնցող էր ու անսպասելի, որ ապշած կանգնել էր բյուրեղապակու կույտի առաջ ու չէր շարժվում: Հետո նա կռացավ, զգուշությամբ վերցրեց կտորներից մեկը, կարծես ուզում էր համոզվել, որ տեսածը երազ չէ:

Հենց այդ ժամանակ էլ ներս մտավ Քնարիկը:

Ռուբիկին սկահակի կտորների առաջ տեսնելով, նա անմիջապես ետ դառավ ու ձայն տվեց.

— Մայրի՜կ, Ռուբիկը սկահակը կոտրե՜ց...

Մայրիկը մնաց աստիճանների վրա.

— Չի՜ կարող պատահել, — շրթունքներն հազիվ շարժելով՝ ասաց նա:

Առաջինը ծեծեց Քնարիկը:

— Անպիտա՛ն տղա, այս ի՞նչ ես արել, — ասաց նա ու մի քանի ապտակ հասցրեց եղբորը:

Ռուբիկը ձեռքը կարմրած այտին դնելով՝ զարմացած նայեց քրոջը, իսկ սա կարծես ավելի ոգևորվելով՝ մի հատ էլ բամփեց տղայի գլխին.

— Անպե՛տք տղա...

Երբ մայրիկը ներս մտավ ու տեսավ սկահակի կտորները, աչքերը մթնեցին: Նա ընդհանրապես Ռուբիկին չէր ծեծում, շատ-շատ՝ մատների ծայրով կհասցներ փափուկ տեղերին: Բայց հիմա մայրիկն այնպես էր կատաղել, որ մի ուժեղ ապտակ հասցնելով՝ տղայի թևից բռնած տարավ կանգնեցրեց անկյունը.

— Կմնաս առանց ճաշի, անպիտա՛ն տղա:

Ռուբիկը վիրավորանքից ծպտուն չէր կարողանում հանել: Նա կանգնել էր անկյունում՝ մի ձեռ-

քով բռնած վարտիքի ուսափոկը, մյուսով պատին ինչ-որ կիսաշրջաններ էր գծում: Նա աչքերը գցել էր հատակին, բայց այդպես էլ տեսավ, թե մայրիկն ինչքան է զայրացած, որ հյուրասենյակի մի անկյունից մյուսն է գնում, վերցնում ու նորից՝ տեղն է դնում պահարանի վրայի իրերը ու ինքն էլ չգիտի, թե ինչ է անում: Հետո միայն գլխի ընկնելով, որ ճաշի պատրաստությունն պիտի տեսնի, գնում է խոհանոց:

Ռուբիկը աչքերը հառած բյուրեղապակե կտորներին, կանգնած էր նույն դիրքով, երբ նորից լսեց քրոջ ձայնը.

— Հայրի՛կ...հայրի՛կ, Ռուբիկը սկահակը կոտրե՛լ է, Գագիկի սկահակը:

— Ի՞նչ, — լսվեց հոր ձայնը:

— Ասում եմ՝ սկահա՛կը... Դե, գավաթը, էլի.. Ռուբիկը կոտրեց:

Հետո տիրեց լռություն, ապա աստիճանների վրա լսվեցին հոր ծանր ոտնաձայները: Հայրիկը ներս մտավ, վերցրեց սկահակի կտորները, երկար նայեց, ապա նորից դրանք ցած դնելով, անցավ խորքի սենյակը, սովորականի նման, շորերը փոխելու: Ռուբիկի կողմն իսկի չնայեց էլ, կարծես սենյակում չէր: Երբ շորերը փոխած, տնային բաճկոնի կոճակները կոճկելով՝ դուրս եկավ, նոր միայն ջղային ասաց.

— Բա եղա՞վ:

Ռուբիկը լուռ էր: Նա իր սև ձիթապտղի նման փայլուն աչքերը նույնիսկ չթարթեց և ներքևից վերև նայեց չարաճճի ու մի քիչ էլ հանդուգն ձևով:

— Սրա՞ն տես, իսկի վեջն էլ չի, — ասաց հայրիկն ու, բռնելով տղայի ականջից, մի լավ ոլորեց:— Ինչքա՞ն ասենք, որ դու քեզ լավ պահես:

Հետո նա էլի մոտեցավ, վերցրեց բյուրեղապակե կտորներն ու երկու ձեռքով փորձեց իրար հարմարեցնել:

— Կպցնել էլ չի լինի,— ասաց նա ու դուրս եկավ սենյակից:

Պապիկը Ռուբիկին չծեծեց, բայց այնպիսի խոսքեր ասաց, որ ծեծելուց էլ վատ էին: Նա՝ մղկտալով անընդհատ դուրս ու ներս էր անում, կատաղի հայացքներ գցելով թոռան վրա՝ վերցնում էր գավաթի կտորները, ցած դնում ու էլի դառնում Ռուբիկին.

—Քեզանից բան չի դուրս գա, հիմա՛ր տղա, ո՛չ խելք ունես, ո՛չ հասկացողություն: Դեռ ուզում ես տիեզերագնաց դառնալ, անպե՛տք: Մի կարգին շարժվել էլ չգիտես: Ախր ի՞նչ գործ ունեիր, ինչու՞ էիր սկահակը վերցնում: Ի՞նչ պատասխանենք Գագիկին:

Ռուբիկը լուռ լսում էր: Նա նույնիսկ սկսեց հավատալ, թե ինքն էլ հենց ջարդել է սկահակը:

Պապիկը գլուխն օրորելով գնաց ճաշասենյակ, որտեղից ամբողջ տնով մեկ տարածվում էր թփով տոլմայի համեղ բուրմունքը: Ռուբիկը թփով տոլմա չէր էլ սիրում, բայց հիմա թուքը կուլ տալով պատկերացնում էր, թե ինչպես են տանեցիները ճաշելու:

— Ախր ինչպե՞ս եղավ,— ճաշասենյակից լսվում էր հոր ձայնը: Քույրը բացատրում էր, պապիկը քրթմնջում: Իսկ մայրիկը միայն մի բան էր կրկնում.

— Հիմա Գագիկը կգա, ի՞նչ պատասխան պիտի տանք:

Շատ չանցած լսվեց դարբասի ձայնը: Մայրիկն շտապ դուրս եկավ և հյուրասենյակով անցավ պատշգամբ՝ Գագիկին ընդառաջ:

Ռուբիկն անհամբեր սպասում էր, թե ինչ է լինելու: Նա Գագիկին լավ գիտեր, գիտեր նաև, որ եղբայրն իրեն շատ է սիրում, բայց միևնույն է, կատարվածը սովորական բան չէր: Նա ավելի սեղմվեց պատին ու կուչ եկավ:

Ճաշասենյակի դուռը բացվեց: Երևացին պապիկի և Քնարիկի գլուխները: Բոլորն անհամբեր սպասում էին: Եվ չնայած հայրիկը դուրս չեկավ ճաշասենյակից, Ռուբիկը գիտեր, որ նա էլ հիմա թերթը մի կողմ դրած սպասում է: Փայտե ատամնանիվները (?) ճռճռացին: Գագիկն արդեն պատշգամբ էր բարձրանում:

— Մա, տեսա՞ր ո՛նց եմ սկահակը կոտրել,— լըսվեց Գագիկի ձայնը:

— Ի՞նչ,— չհասկացավ մայրը: Պապիկն ու Քընարիկն առաջ եկան: Ճաշասենյակի դռների մեջ երևաց հայրիկի զարմացած դեմքը:

— Չե՞ք տեսել, ի՛նչ է...ասում եմ՝ սկահակս կոտրեցի: Շատ հիմար բան ստացվեց:

— Դու՞ ես կոտրել,– նորից հարցրեց մայրիկը:

— Ո՞նց թե,— ասաց հայրիկն ու առաջ եկավ:

Բոլորը մոտեցան արկյունում կանգնած Ռուբիկին:

— Ա՛յ տղա, բա դու ինչու՞ ձայն չես հանում, էդ ո՞նց եղավ,— մի տեսակ չփոթված ասաց պապիկը:

Ռուբիկը աչքերը հատակին հառած՝ շարունակում էր մատով կիսաշրջաններ գծել պատին:

Մայրիկը նետվեց դեպի տղան և գրկելով սկսեց համբուրել նրա տաք այտերը.

— Բալի՛կ ջան. բա ինչու՞ ոչինչ չէիր ասում:

Ռուբիկի սև, չարաճճի աչքերն հիմա հանգիստ էին երևում և անտարբեր: Նա հերթով նայում էր շուրջը կանգնածներին ու մնում էր լուռ:

— Դե արի ու սրանից բան հասկացիր,— ասաց պապիկը:— Ա՛յ տղա, ինչու՞ չէիր ասում, որ դու չես արել, հը՞...

— Չգիտեմ,— ասաց Ռուբիկն ու փղձկալով գլուխը թաղեց մայրիկի մազերի մեջ:

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



Ապրում էին շունը, աքլորն ու հավերը պառավ տատիկի մոտ: Տատիկն ուներ մի փոքրիկ տնակ, տնակի կողքին՝ բանջարանոց ու մի քանի մրգատու ծառ: Անտառն էլ շատ մոտիկ էր, ու անտառում էլ լիքը սունկ կար: Հավերը քուջուջ էին անում բանջարանոցում, թարմ-թարմ ձվեր էին ածում տատիկի համար: Աքլորը հետևում էր հավերին և ծուղրուղու էր կանչում: Իսկ շունը հսկում էր, որ հանկարծ հավերն ու աքլորը տնակից շատ չհեռանան:

Այսպես, ապրում էին նրանք՝ պառավ տատիկը, աքլորն ու հավերը խաղաղ ու երջանիկ, և ավելի խաղաղ ու երջանիկ կլինեին, եթե չլիներ աղվեսը...

Մի անգամ տատիկը վերցրել էր զամբյուղն ու իր մեծ փայտը և գնացել անտառ սունկ հավաքելու: Հավերն ու աքլորը քուջուջ էին անում բանջարանոցում: Շունն էլ պառկել էր ծառի ըստվերում, գլուխը հենել էր թաթերին ու մտածում էր, ինչքան լավ կլիներ իրենց կյանքը, եթե չլինեին գող ու խորամանկ աղվեսները...

Աքլորը քուջուջ անելով մոտեցավ շանը, տեսավ շունը մտածում է, ասաց.

—Ինչի՞ մասին ես մտածում, շու՛ն:

Շունը ժպտաց.

— Մեր այս սիրուն տնակի, բանջարանոցի, ծառերի, տատիկի ու գող աղվեսների մասին:

Աքլորն էլ սկսեց մտածել... Հետո հարցրեց.

— Մինչև տատիկին հանդիպելը ու՞մ մոտ էիր ապրում:

Շունն ասաց.

— Հովիվ պապիկի մոտ: Գառներին էի հսկում:

— Այնտե՞ղ էր կյանքդ հանգիստ, թե՞ այստեղ, շու՛ն,— հարցրեց աքլորը:

Շունը պատասխանեց.

— Շունը ոչ մի տեղ էլ հանգիստ կյանք չունի, աքլո՛ր ջան: Էնտեղ էլ գայլերն էին համը հանում:

Աքլորը հարցրեց.

— Գա՞յլն է մեծ, թե՞ աղվեսը:

— Իհա՛րկե գայլը,— պատասխանեց շունը:

— Գայլն էլ է՞ աղվեսի նման հավ ուտում, շո՛ւն:

Շունը քմծիծաղ տվեց.

— Է՜, աքլո՛ր, աքլո՛ր: Ուղեղումդ միայն հավերն են ու աղվեսը: Գայլը գառ է ուտում, գա՛ռ:

— Ուրեմն գառը հավից համե՞ղ է:

— Չէ՛,— ասաց շունը,—հավն է ավելի հա-

# Շունն ու աքլորը

(Հեքիաթ)

ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

մեղ, բայց գայլը աղվեսի չափ խելք ու ճաշակ չունի, որ հասկանա հավի համը։

Աքլորը բարկացավ, ասաց.

— Լսի՛ր, շու՛ն։

— Լսում եմ, ասա՛, աքլո՛ր,— ժպտաց շունը։

— Իսկ ինչու՞ գայլը աղվեսին չի ուտում։

— Կուտի, եթե շատ սոված լինի,— ասաց շունը։— Գայլը սոված ժամանակ բոլորին էլ ուտում է։

Աքլորը վախեցավ.

— Յա՛, քեզ էլ կուտի՞։

Շունը գոմռաց, ցույց տվեց սուր-սուր ժանիքները.

— Ջէ՛, ինձ չի կարող ուտել։

— Իսկ տատիկի՞ն։

— Տատիկին էլ չի կարող. տատիկն իր մեծ փայտով այնպես կխփի գայլի գլխին, որ գայլը կփախչի։

Աքլորը մտածեց. երանի ինքն էլ տատիկի մեծ փայտից ունենար, խփեր աղվեսի գլխին, աղվեսը փախչեր...

— Լսի՛ր, շու՛ն։

— Ասա՛, աքլո՛ր։

— Իսկ որ հանկարծ աղվեսը ինձ բռնի, կուտի՞։

— Որ հավերի նման վախենաս իրենից, քեզ էլ կուտի, բա ի՞նչ կանի,— ասաց շունը։

Աքլորն աքլորացավ.

— Յա՛։ Ես հո հավ չե՞մ, որ աղվեսից վախենամ։ Որ մի հատ կտուցովս տամ աղվեսի գլխին, կսատկի։

Շունը ծիծաղեց, ասաց.

— Գիտեմ, աքլո՛ր ջան, գիտե՛մ, որ դու քաջ ես։ Հենց դրա համար էլ տատիկն ու հավերը քեզ հարգում են ու սիրում։

Աքլորն ավելի աքլորացավ.

— Բա ո՞նց անենք, է, շու՛ն ջան, որ այդ աղվեսին բռնենք։

— Աղվեսին բռնելը շատ դժվար է, աքլո՛ր ջան,— գոմռաց շունը։— Ջի մոտենում, է՛, հավաբնին։

Աքլորը հառաչեց.

— Բա սա կյա՞նք է, շու՛ն ջան։ Օր ու գիշեր նստիր սպասիր, թե՝ հիմա ուր որ է աղվեսը պիտի գա։

Շունը ժպտաց.

— Դե, մեր կյանքն էլ սա է։ Ի՞նչ կարող ենք անել, աքլո՛ր ջան։

Աքլորը մտածեց, ասաց.

— Կարող ենք միասին էնպիսի բան մտածել, որ աղվեսին բռնենք։

— Օրինակ, ո՞նց,— հարցրեց շունը։

Աքլորն ասաց.



— Օրինակ, շատ հասարակ։ Ես գնամ անտառ, դու իմ ետևից թաքուն արի։ Հենց որ աղվեսը երևա, ես ծուղրուղու կկանչեմ։ Նա կբռնի ինձ, որ ուտի, ես կտուցովս կխփեմ, նա կշշմի։ Հենց այդ ժամանակ էլ դու կհարձակվես, և...

Եվ այդ ժամանակ շունը հորանջեց.

— Լա՛վ, լա՛վ, աքլո՛ր ջան, հիմա քունս տանում է։ Հետո մի բան կմտածենք։ Դու հավերին հսկիր, ես մի քիչ քնեմ։ Հանկարծ աղվեսը, որ երևա, ծուղրուղու կկանչես, չվախենաս, հա՛։

Աքլորը վիրավորվեց.

— Ինձ հավի տեղ ես դրե՞լ. շու՛ն ջան: Հանգիստ քնիր:

Շունը քնեց. բայց անհանգիստ էր...

Իսկ հավերն անու՜շ-անուշ քուջուջ էին անում: Աքլորն էլ շատ խոսելուց սովածացել էր. ինքն էլ սկսեց քուջուջ անել: Քուջուջ-քուջուջ անելով՝ մոտեցավ ցանկապատին ու հանկարծ տեսավ, որ ցանկապատի արանքից աղվեսը լպիրշ աչքերով նայում է իրեն: Աքլորն ուզեց ծուղրուղու կանչել. բայց ձայնը վախից դուրս չէր գալիս: Աղվեսը ծիծաղեց.

— Ձայնը փորիցդ դուրս չի գալի՞ս, աքլո՛ր:

— Ո՞ւմ ձայնը փորից դուրս չի գալիս,— աքլորացավ աքլորը:

Աղվեսը չարախնդաց.

— Ուրեմն քո աքլորի խելքով շանը խորհուրդ ես տալիս, որ ինձ բռնեք. հա՞:

— Չա՛,— զարմացավ աքլորը:

— Բա՛: Կարծում ես. չէի լսու՞մ ինչ էիք խոսում շան հետ. աքլորի՛ ուղեղ: Հլա սպասի՛ր:

Այստեղ աքլորը հիշեց. որ ինքն աքլոր է. այլ ոչ հավ ու կանչեց.

— Շու՛ն, արի՛. աղվեսն էստե՛ղ է. ծուղրուղու՜:

Շունն իսկույն վեր թռավ. վազեց. որ բռնի աղվեսին. բայց հավերի գողն արդեն շա՜տ հեռու էր տնակից ու հեռվից սպառնում էր քաջ աքլորին.

— Հլա սպասի՛ր. ձեռքս որ ընկնես՝ վի՜զդ կըծոլթեմ:

— Ո՞ւմ վիզը ծոլթես, ծուղրուղու՜,— աքլորացել էր աքլորը:

Շունը հաչում էր կատաղությունից. որ նորից ձեռքից բաց թողին աղվեսին: Հավերը վախից կչկչում էին: Իսկ քաջ աքլորը հանգստացնում էր նրանց.



— Ծուղրուղու՜...

Եվ այսպես. մինչև հիմա էլ ապրում են շունը, քաջ աքլորն ու հավերը պառավ տատիկի մոտ: Տատիկը կուտ է տալիս նրանց. բանջարանոցն է մշակում ու գնում է սունկ հավաքելու: Հավերը քուջուջ են անում: Իսկ քաջ աքլորն ու շունը մտածում են, թե ոնց անեն, որ բռնեն խորամանկ. գող ու խարդախ աղվեսին...

# ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

## ՄԻՇՏ ՄԻԱՍԻՆ, ՄԻՇՏ ՀԱՄԵՐԱՇԽ

Դպրոցի դահլիճը տոնականորեն չէր զարդարված, արտաքին ո՛չ մի զարդարանք, ո՛չ մի փոփոխություն չկար դահլիճում: Բայց միջանցքների աշխուժությունը, երեխաների առույգ շարժումը, դեմքերի ժպիտն ու աչքերի ուրախ փայլը զարդարում էին ոչ միայն դահլիճը, այլև ամբողջ դպրոցը: Ես աննկատ մտա դահլիճ և նստեցի մի անկյունում: Դահլիճը աստիճանաբար լցվում էր ծնողներով, ծաղկեփնջավոր տղաներով և աղջիկներով: Ուղիղ ժամը վեցն է: Շեփորահարները միջանցքում հավաքի ազդանշան են տալիս: Քիչ անց թմբուկների համազարկերի տակ հպարտ ներս են մտնում ութերորդ «բ» և երրորդ «դ» դասարանցիները: Այդ օրը նրանց կյանքի ամենաերջանիկ օրն էր: Այդ օրը նրանք մեծացան, դարձան իրենց ծնողների գործի շարունակողները, դարձան պիոներներ և կոմերիտականներ: Դա սեպտեմբերի 19-ին էր: Երևանի 56-րդ դպրոցի 8-րդ «բ» դասարանցիները իրենց ջոկատի անունը և վկկապները հավատով հանձնեցին երրորդ «դ» դասարանի աշակերտներին: Ութերորդցիները հավատում են, որ երրորդ դասարանցիները ստանձնելով 26 կոմիսարների անունը, կշարունակեն իրենց ջոկատի սովորույթներն ու ավանդները:

32 հոգի են ութերորդցիները, բոլորն էլ ժիր ու կայտառ, մշտաժպիտ և աշխատասեր, խոհուն ու ավյունով: Նրանք բոլորն էլ միասին են ընդունվել դպրոց: Հետո մտերմացել են, հասկացել միմյանց:

Եվ ահա այսօր, երբ իրենք հրաժեշտ են տալիս պիոներական վկկապներին, երբ երևանյան աստղալից երկինքը վերջին անգամ է ժպտում իրենց պիոներական ավանդական խարույկին, նրանք մի պահ վերապրում են բոլոր այն ուրախ ու տխուր օրերը, որ ունեցել են անցած պիոներական տարիներին:

Համերաշխ ջոկատը միջջոկատային մրցումներում հաճախ առաջնություն է շահել:

— Մենք երբեք չենք սպասել, որ ընկեր Թերեկյան (ավագ ջոկատավարը) մեկ որևէ հանձնարարություն տա, ինչ-որ բան կազմակերպի: Մենք շատ լավ հասկանում ենք, որ ուսումից բացի պետք է հետաքրքիր միջոցառումներ կազմակերպել, բովանդակալից և արդյունավետ անցկացնել պիոներական կյանքը:

Եվ ջոկատում մեկը մյուսին հաջորդում էին ջերմ հանդիպումները սիրելի բանաստեղծներ Սիլվա Կապուտիկյանի, Գևորգ Էմինի հետ, սրամիտների և կվարձասերների մրցույթը, ջոկատի պատի թերթի սիստեմատիկ լույս ընծայումը, կոլեկտիվ կինոդիտումներն ու ուրախ ժամանցները: Այդ տարիներին քանի՜-քանի ծրարներ թռան աշխարհի տարբեր մայրցամաքներ, Հալեպի երեխաները ինչքան ուրախացան, երբ Նոր տարվա նախօրյակին հարազատ հայրենիքի քաղցրավենիները ճաշակեցին, կապեցին իրենց հեռավոր քույրերի և եղբայրների ուղարկած վզկապները, գրեցին նույն գրիչով և մատիտով, թերթեցին սիրելի դասագրքերը:

Հանրապետական պիոներական 8-րդ հավաքին ջոկատը մասնակցեց միլիցիոներների համազգեստով: Այդպես նրանք վստահ շրջում էին դպրոցում, մտնում դասասենյակները և տեղնուտեղը կանխում անկարգությունները:

Նրանք շատ են օգնել նաև ժամացույցի գործարանին: Այ, երբ կառուցվեցին գործարանի նոր կորպուսները, մեր պիոներները կամավոր օգնեցին նրանց փոխադրման աշխատանքներին: Իրենց ուրախ երգ ու պարով, մանկական անհոգ ծիծաղով նրանք բազմիցս լցրել են գործարանի դահլիճը:

Բայց պատահել է, որ անկարգություն էլ են արել, բարկացրել են բոլորին:

Սակայն մի անգամ դասերից հետո դպրոցի դիրեկտոր ընկեր Կարապետյանը իր մոտ կանչեց դասղեկ Վերա Ադամյանին.

— Ուղղակի անհարմար է, նրանք ոչ մեկին չեն լսում, խանգարում են դասերը, դարձել են անտանելի:

Հուզվեց ընկեր Ադամյանը: Ինչպե՞ս, մի՞թե ամբողջ աշխատանքը պետք է ջուրը թափվի: Տարիներ առաջ էր, երբ ընկեր Ադամյանը այդ 32 փոքրիկներին ընդունեց իր առաջին դասարանում: Հետո չարչարվեց, շատ աշխատեց, որպեսզի համոզմունք և հավատ ներշնչի նրանց մոտ դեպի մարդը, հարգանք դեպի հարազատ դպրոցը, ընկերը, ուսուցիչն ու ծնողը: Եվ ինչ, այսօր նրանք հուսախա՞բ են անում իրեն: Հաջորդ օրը նա հուզված մտավ դասարան:



Լուսանկարները՝ ՄԻՔԱՅԵԼ ՔՈՉԱՐՅԱՆԻ

Ոչինչ չասաց, ոչ մեկին նկատողություն չարեց, միայն տխուր աչքերով նայեց բոլորին և գլխահակ նստեց: Եվ այդպես քառասունհինգ րոպե, ասես տարիներ անցան: Երբ հնչեց զանգը, նրանք բոլորն էլ, առանց նախապես համաձայնվելու, լուռ դուրս եկան դասարանից և գնացին պիոներ սենյակ, ընկեր Թերեզայի



մոտ: Ավագ ջոկատավարը զարմացավ՝ «Այս ի՞նչ է, ինչո՞ւ եք հանում վկկապները, ի՞նչ է նշանակում դա»:

— Մենք առայժմ արժանի չենք պիոներ կոչվելու,— հազիվ լսելի, կմկմացին նրանք:

Այդպես նրանք կարող են նաև իրենց պատժել: Այդ օրվանից փոխվեցին, հասկացան, թե ինչ վատ արարք են գործել:

Համերաշխ ջոկատում ամենակարևորն այն է, որ չկա անտարբերություն: Բոլորն էլ մտահոգված են մեկը մյուսի բախտով: Եթե մեկը տանը չի օգնում մայրիկին, պետք է հավաքվել, մտերմիկ զրուցել, հասկացնել, որ իրենք արդեն մեծ են, եթե անհրաժեշտ է, ուրեմն պետք է գնալ խանութ, մաքրել հատակը, անկողինը հարդարել, ցախը կոտրել, օգնել փոքրիկ քույրիկին և ծեր տատիկին:

Ութերորդցիները չեն վիճում, չեն խռովում: Վիճելի հարցերը քննարկում են դասղեկի ժամին: Հատուկ թեմաներով շարադրություններ են գրում և անկեղծ խոսում սեփական թերությունների մասին:

Իրենց կատարած գործերով նրանք միշտ էլ բարձր են պահել ջոկատի անունը, այն մարդկանց անունը, որոնք կոհվեցին իրենց երջանիկ ապագայի համար, որոնց շիրմից բերված մի բուռ հողը այսօր որպես մասունք նրանք սրբությամբ են պահպանում իրենց դասարանում: Այդ մասունքը կարծես նրանց ուժ ու եռանդ է տալիս:

Ութերորդցիները շատ են սիրում նաև իրենց հայրենի տունը՝ սիրելի մայրաքաղաքը: Երբ տոնում էինք հինավուրց Երևանի 2750-ամյակը, դասարանի աշակերտական խորհուրդը որոշեց հետհոտն շրջել մայրաքաղաքում, ծանոթանալ հին ու նոր Երևանի հետ: Անցյալ տարվա ապրիլից, ամեն կիրակի դասարանը շրջեց քաղաքը: Նրանք ուսումնասիրեցին Կարմիր բլուրի շրջակայքը, ծաղկեփնջեր դրեցին մեծ Վարպետի, անմահ Կոմիտասի շիրիմներին, դիտեցին Արին բերդի ցուցահանդեսը, հիացան նաև Համբերդի գեղեցիկ բնությամբ, հպարտ ու համարձակ քայլեցին Սարդարապատի ծառուղիներով:

Այս բոլորը հենց այնպես, ինքնանպատակ չի եղել: Դասարանում կատարվող յուրաքանչյուր դեպք լավ կամ վատ, նրանց մոտ հավատ և համոզմունք է մշակել, հավատ դեպի մարդը, դեպի ապագան: Իսկ այդ բոլորի համար թերևս նրանք պարտական են մեկին, իրենց սիրելի դասղեկին, ընկեր Ադամյանին: Մեկը, որ ոչինչ չխնայելով, հարազատ մոր նման, ութ տարի շարունակ, նրանց փայփայել, գուրգուրել, հասկացրել և համոզել է:

Այսպես են ապրել ութերորդցիները՝ միշտ միասին, միշտ համերաշխ, միշտ սիրալիր: Այսօր նրանք արդեն կոմերիտականներ են: Թող միշտ, ամեն տարի սեպտեմբերի 19-ին վառվի նրանց ավանդական, բայց արդեն կոմերիտական խարույկը, թող կրկնապատկվի նրանց ուսման առաջավորների թիվը, նրանց պիոներական հետաքրքիր գործերը թող շարունակեն երրորդցիները, չորրորդցիները, բոլորը:

*ԿԱՑՅԱ ՍԱՐՎԱԶՅԱՆ*



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 12 Դեկտեմբեր 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*




**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41,*
*հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96:*

ՎՖ 06712: Պատվեր՝ 1549: Տպաքանակ՝ 48600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 13/XII. 1968 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:
Գինը՝ 10 կ.

ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Ունի հագին
Ընտիր շապիկ,
Հարկավոր է
Տանը, ճամփին:
Տակը ծակ է,
Բերանը՝ փակ,
Ներսից տաք է,
Իսկ դրսից՝ պաղ:

(Թերմոս)

* * *

Հողից է հանած,
Փայտի մեջ առած,
Վերցրու ձեռքդ՝
Զորանա խելքդ:

(Մատիտ)

* * *

Տուն է շինում
Նա վեց պատից՝
Չափած, ձևած
Եվ ամուր.
Բայց վեց պատն էլ
Իր հարևան
Վեց տան համար
Ընդհանուր:

(Մեղվաբջիջ)

ՄՈՎՍԵՍ ՅԱԽՇՈՒՆՑ



ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

## ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿ, ՊԻՈՆԵՐ

Դպրոցի բակի երկու կողմում՝ տաս-տասնհինգ մետր իրարից հեռու, մասնակիցների թվին համապատասխան, դրվում են աթոռներ: Խաղացողները բաժանվում են երկու հավասար խմբի և նստում աթոռներին: Խաղավարը կանգնում է կենտրոնում: Նա բարձր ձայնով սկսում է զանազան նախադասություններ ասել.

— Իմ քույրիկը շուտով կդառնա հոկտեմբերիկ:

— Ո՞վ է այսօր օգնել մայրիկին, տատիկին:

— Այս գրքերը քեզ համար են, պիոնե՛ր:

«Հոկտեմբերիկ» կամ «պիոներ» բառերով վերջացող բոլոր նախադասությունների արտասանության ժամանակ խմբերը վազքով փոխում են տեղերը: Խաղավարը վազում նստում է խաղացողներից որևէ մեկի աթոռին: Նա, ո՛վ մնում է առանց աթոռի, պետք է երգի, պարի կամ արտասանի:

Ում աթոռին որ նստել է խաղավարը, հաջորդ անգամ նա է ղեկավարում խաղը:

Եթե աթոռներ չկան, կարելի է բառակուսիներ գծել, խաղացողները թող կանգնեն դրանց մեջ:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

## Պատասխանում ենք

ՊԻՈՆԵՐ № 8

### Կեղծ ոսկեդրամները

Թագավորի որդին նախ պատրաստեց ունցիայի մեկ տասնորդի ծանրությամբ 550 հատ կշռաքար: Ապա նա համարակալեց բոլոր տուփերը՝ 1-ին, 2-րդ, 3-րդ, 4-րդ, 5-րդ, 6-րդ, 7-րդ, 8-րդ, 9-րդ, 10-րդ: Հետո նա առաջին տուփից վերցրեց 1 ոսկեդրամ, 2-րդ տուփից 2 ոսկեդրամ, 3-րդ տուփից 3 ոսկեդրամ, 4-րդ տուփից 4 ոսկեդրամ, 5-րդ տուփից 5 ոսկեդրամ, 6-րդ տուփից 6 ոսկեդրամ, 7-րդ տուփից 7 ոսկեդրամ, 8-րդ տուփից 8 ոսկեդրամ, 9-րդ տուփից 9 ոսկեդրամ և 10-րդ տուփի բոլոր դրամները: Վերցրած բոլոր 55 դրամները նա դրեց նժարներից մեկի վրա, իսկ մյուս նժարին սկսեց դնել կշռաքարերը: Նա մտածում էր այսպես. «Եթե կեղծ են առաջին տուփի ոսկիները, ապա 55 դրամները հավասարակշռելու համար պետք կլինի 549 կշռաքար, եթե կեղծ են 2-րդ տուփի դրամները, ապա նրանք հավասար կլինեն 548 կշռաքարի և այլն»: Եվ նա գտավ, որ 8-րդ տուփի ոսկեդրամները ավելի թեթև են մյուսներից, քանի որ ութ կշռաքարի չափ թեթև էին 55 դրամները:

# ՄԿՆԵՐՆ ՈՒ ԿԱՏՈՒՆ

*ԳԱԳԻԿ ՍՈՎԵՐՉՅԱՆ*

Ոնց պատահեց. մարդ չիմացավ.
Կատուն գինու կարասն ընկավ։
Ուրախացան մկնիկները,
Սև սատանի ճուտիկները։
Մութ ծակերից իսկույն ելան.
Անուշ արին՝ ինչ ցանկացան։
— Նեղն է ընկել մլավանը,
Ասաց պստիկ ծվծվանը. —
Եկեք նրան մահից փրկենք.
Պայմանագիր հետը կնքենք.

Որ մեր ազնիվ, սայծառ ցեղը
Էլ չկորչի իզուր տեղը։ —
Ջահելները փառքի ծարավ՝
Ծվծվացին ուրախ-ուրախ.
Միայն մի ծեր, փորձառու մուկ
Ասաց. — Լսե՛ք, անմիտ եք դուք.
Հենց կարասից նրան հանեք,
Սեր գլխին նոր փորձանք կանեք։ —
Ջահելները չլսեցին։
— Ինչ վախկո՛տն ես դու, — ասացին.
Իրար պոչից կպան մի կերպ՝
Հսկա կատվին դուրս քաշեցին։
Պայմանագիրն հենց որ կնքվեց,
Ուրախացան փոքր ու մեծ։



Բայց երկու օր չէր անցել դ
Անհետ կորան երկու մկներ։
Մկնիկները շատ զարմացան,
Իրար անցան։
Մի քանիսն էլ ելան իսկույն
Ու գնացին փիսոյի տուն։
Իսկ կատուն թե՝
— Էդ պայմանը ճշմարիտ
Պիտի ասեմ ձեզ բացեբաց,
Որ խաբել եք ինձ նենգաբար,
Երբ եղել եմ մի քիչ հարբած

*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*